## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ԶԱՏԿԱԿԱՆ ՏՕՆԵՐՈՒ

*ԱՒԱԳ ՇԱԲԱԹ*
*ԿԻՐԱԿԻ՝ ԶԱՏԻԿ*
*ԵՐԿՈՒՇԱԲԹԻ՝ ՄԵՌԵԼՈՑ*

### ՓԱՐԻԶ

*Ս. ՅՈՎՀ. - ՄԿՐՏԻՉ*

Ճրագալոյց
*Սկիզբ ժամերգութեան ժամը* 15·30 :
*Հանդիսաւոր պատարագ* 17 :
Տօն Յարութեան
*Սկիզբ ժամերգութեան ժամը* 8 :
*Քառաձայն պատարագ* 10 :
*Կը պատարագէ եւ կը քարոզէ* Սերովբէ Եպիսկոպոս :
Զատկի Մեռելոց
*Պատարագ ժամը* 10 :

*ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ*
Ճրագալոյցի *ժամերգութիւն եւ ձայնաւոր պատարագ ժամը* 17 :
Զատիկ
*Ժամերգութիւն , ձայնաւոր պատարագ եւ հաւաքական հաղորդութիւն ժամը* 10 :
Մեռելոց
*Հոգեհանգստեան պատարագ ժամը* 10·30 :

*ԱՐՈՒԱՐՁԱՆՆԵՐ*
*ՇԱՒԻԼ, ԱԹՆՈՒՎԻԼ եւ ԱԼՖՈՐՎԻԼ*
*Փարիզի եկեղեցւոյ ժամերուն :*

*ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ*
Ճրագալոյց
*Ժամերգութիւն եւ ընթերցուածք ժամը* 16·30 :
*Պատարագ խթումի* 17·30 :
Զատիկ
*Ժամերգութիւն նախատօնակ եւ անդաստան ժամը* 7·30 :
*Պատարագ* 10 :
Մեռելոց
*Ժամերգութիւն ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
*Հոգեհանգիստ* 11·45 :

*ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ ԵԿԵՂԵՑԻ*
*Առաւօտեան ժամերգութիւն ժամը* 7 :
*Խաչի Քո Քրիստոս* 8·30 :
*Երեկոյեան ժամերգութիւն* 17 :
*Ընթերցուածք մարգարէութեանց* 17·30 :
*Ձայնաւոր պատարագ* 18·30 :
*Նախատօնակ* 20 :
Զատիկ
*Գիշերային ժամերգութիւն ժամը* 7 :
*Առաւօտեան ժամերգութիւն* 9 :
*Ձայնաւոր պատարագ ժամը* 10 :
Մեռելոց
*Ձայնաւոր պատարագ ժամը* 10 :
*Հոգեհանգիստ* 11·30 :

*ՊՕՄՌՆ*
*Ճրագալոյց ժամը* 17 :
*Պատարագ եւ նախատօնակ* 18·30 :
Զատիկ
*Առաւօտեան արարողութիւն ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
Մեռելոց
*Սկիզբ ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
*Հոգեհանգիստ* 11·45 :

*ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ (Մարսէյլ)*
*Առաւօտեան ժամերգութիւն ժամը* 9 :
*Ճրագալոյց* 17 :
*Պատարագ* 19 :
Զատիկ
*Սկիզբ ժամերգութեան ժամը* 7 :
*Պատարագ* 10 :
*Քարոզ եւ հոգեհանգիստ* 11·30 :
Մեռելոց
*Սկիզբ ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
*Հոգեհանգիստ* 11 :

*ԼԻՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ*
*Ճրագալոյց ժամը* 16 :
*Խնթման արարողութիւն* 18 :
*ԶԱՏԻԿ*
*Սկիզբ ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
Մեռելոց
*Սկիզբ ժամը* 8 :
*Պատարագ* 10 :
*Հոգեհանգիստ* 11 :

*ՏԷՍԻՆ*
*Ճրագալոյց ժամը* 17 :
*Պատարագ* 18 :
*ԶԱՏԻԿ*
*Սկիզբ ժամը* 8·30 :
*Պատարագ* 10 :

*ՊՈՒԼՎԱՐ ՕՏՏՈՅԻ Ս. ՅԱԿՈԲ ԵԿԵՂԵՑԻ*
*Ճրագալոյց ժամը* 17 :
*Պատարագ* 17·30 :
*ԶԱՏԻԿ*
*Սկիզբ ժամը* 7·30 :
*Պատարագ* 10 :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Այրի Տիկին Տէստէկիւլ Աշնամեան եւ զաւակները՝ Տէր եւ Տիկին Կիւլպէնկ, Գրիգոր, Տիգրան, Հայկազ եւ զաւակները, նաեւ Տէր եւ Տիկին Արփա, Ժիրայր, Արշաւիր Գարայեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Երկուշաբթի առաւօտ (3 Ապրիլ) Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ իրենց ամուսնոյն, հօր եւ մօրեղբօր*

*ԹԱԴԷՈՍ ԱՇՆԱՄԵԱՆԻ*

*մահուան քառասունքին առթիւ:*

*Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ :*

## ՆՈՒԷՐ

*Տէր եւ Տիկին Յակոբ Խաչմանեան իրենց քրոջ՝ Տիկին Արաքսի Գ. Նալպանտի կսկծալի մահուան քառասունքին առթիւ, (Ամերիկա), կը նուիրեն յիշատ Ն. Ֆ. Շաւիլի նորակառոյց եկեղեցիին, 40 Ն. Ֆ. Հայ Մշակոյթի Տան Շաւարշ Միսաքեան սրահին, քսան Ն. Ֆ. «Յառաջ»ի բարգաւաճման: (Ստանալ «Յառաջ»էն) :*

imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)









### ԹԱՏԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ՝ ՖՐԱՆՍ · ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Չորեքշաբթի ժամը 21ին, ՖՐԱՆՍԱ 3 (նախկին՝ ազգային) ձայնասփիւռի կայանէն պիտի տրուի Վիքթոր Կարտոնի ֆրանսերէն գրուած մէկ թատերգութիւնը՝

LES CHARMES DE SEMIRAMIS

Տեւողութիւն մէկ ժամ 45 վայրկեան : Եւ վեց հայկական ժողովրդական երգեր զորս կ'երգէ՝ Տիկին Նշանեան :

### ԱԶԴ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսին համար ղրկուած տոմսերը, հրաւիրատոմսերը եւ առկախ մնացած հաշիւները ղրկել հետեւեալ հասցէին՝

Mlle H. SRABIAN
103 bis, Rue Lamarck, Paris 18e

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը Հայկ. Ծնունդի առթիւ ի պատիւ Նոր Սեբաստիոյ իր սարքած թէյասեղանին, ստացաւ հետեւեալ նուէրները: Գ. Գ. Վարդգ. Քէօլէեան հինգ Ն. Ֆ., Տէր – Մինասեան հինգ եւ Ե. Մամեան տասը Ն. Ֆ., Տիկիններ Քէպրիթ – ճեան, Կարապետեան հինգական, Պար – սամեան եօթը, Պօղոսեան հինգ, Մամ – եան երեսուն, Ոմն հինգ Ն. Ֆ.:

Տէր եւ Տիկին Սահակ Խաչատուրեան տասը Ն. Ֆ. նուիրեցին Ծնունդի առթիւ Գէորգ Գասպարեանի յիշատակին :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆ
ՅՈՒՆԻՍ 11ԻՆ



Imprimerie Spéciale du journal «Haratch»
32, Rue de Trévise, PARIS (9e)

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷԹ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄԲԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24 Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով : Ղեկավարութեամբ Տիկին Ցամիկ Քիւրքճեանի:

Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:

Մուտք՝ 3 Ն. Ֆ.:



ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

# ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ
SALLE DE LA CHIMIE
28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը:

ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵՌԵԱԿԸ

(Հայկական ժողովրդական երգեր)

Պ. Մկրտիչ Պօղոսեան (թենոր)

Օր. Ճ. Գաբոյեան (արտասան.) Պ. Արա Գրիգորեան (արտ.)

Օր. Օփիկ Քոմբաջեան (դաշնակ)

Ցայտնի ջութակահար

GERARD JARRY

(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)

Դաշնակով կ'ընկերանայ

Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը:

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Կազմակերպուած Գանեխօ Քաջանի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին կողմէ։*

*Այս Հինգշաբթի ժամը 21ին, Ռիւ տ'Արքէօլ, Սէն Ռընէ եկեղեցիին նուէւը։*

*Դասախօս՝ Ընկ. Ա. ԻՍԱՀԱԿԵԱՆ*

*Կը հրաւիրուին Նոր Սերնդականները եւ համակիրները։*

---

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Երիցուհի Աղդէ Փայլակեան եւ զաւակները, Գ. Մովսէս Փայլակեան եւ զաւակները (Պէյրութ), կը ծանուցանեն թէ այս Կիրակի, Փարիզի Սուրբ Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ՝*

**ՏԷՐ ԱԴԴԷ ՔՀՆՅ. ՓԱՅԼԱԿԵԱՆԻ**

*մահուան քառասունքին առթիւ։*

×

*Այրի Տիկին Լեւոն Քանթարճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պետրոս Սարգիսեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ հօրեղբօր՝*

**ԼԵՒՈՆ ՔԱՆԹԱՐՃԵԱՆԻ**

*մահուան քառասնամեակին առթիւ եւ իրենց մօր եւ մեծ մօր՝*

**ՎԵՐԺԻՆ ՔԱՆԹԱՐՃԵԱՆԻ**

*մահուան երրորդ տարելիցին առթիւ, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, յետ պատարագի։*

*Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները։*

---

### ՆՈՒԷՐ

*Այրի Տիկին Լ. Ինճէճեան երեսուն Ն. Ֆ. կը նուիրէ Կապ. Խաչի Կեդր. վարչութեան, իր անցուցած արկածին բարւօք ապաքինումին առթիւ։ (Ստանալ «Յառաջ»էն)։*

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ՄԱՅԻՍ 14ԻՆ**

---

### ԱԶԴ

*Աղքատախնամի ծերանոցներու վարչութիւնը կը յայտարարէ որ մօտ ատենէն տրամադրելի նոր անկողիններ պիտի ունենայ Մոնմորանսիի, Սէն Ռաֆայէլի (վերապահուած միմիայն հայ գաղթականներու) եւ Անտիպի հաստատութեանց մէջ։*

*Առ այդ, կը յանձնարարուի բոլոր անոնց որոնք կը փափաքին այս ծերանոցներուն մէջ պատսպարուիլ, այժմէն հարկ եղած ձեւակերպութիւնները լրացնելու համար, դիմել՝ Աղքատախնամի գրասենեակը, 32* Րիւ տը Թրէվիզ, *Փարիզ* (9)։ (ԿՆԻՔ)

---



## ՆՈՐ ԿԻՐԱԿԻ

**ՓԱՐԻԶ.— Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ**

*Պատարագ ժամը 10ին, ի յիշատակ համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմներու նահատակներուն։*

*Կը նախագահէ եւ կը քարոզէ՝*

**ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆ**

**ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ**

*Ժամերգութիւն, պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 8–11·30։*

**ՊՕՄՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ**

*Սկիզբը ժամը 8։*
*Պատարագ* 10։
*Հոգեհանգիստ* 11·45։

**ՍԻՆԹ ԱՆԹՈՒԱՆ**

*Սկիզբը ժամը 8։*
*Պատարագ* 10։

**ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ**
10 bis, Rue Thouin, PARIS

*Այս Կիրակի ժամը 10·30ին, հանդիսաւոր պատարագ, ողբացեալ Արամ Ճինճեանի եւ Մարի Ժամկոչեանի հոգիներուն համար։*

*Ննջեցեալներուն յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։*

---

**ՄԱՐՍԷՅԼ**

*Նախագահութեամբ Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան։*

**ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ 8**

Դաշնակահար

**ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

*կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ։*

---

**ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ**

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Բարգէն Սիւնի խումբին։*

*Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, ՓԵՐԿՈԼԱՑԻ սրահը (Ռոն – Փուէն)։*

*Կը մասնակցի՝ ԱՆՏՐԷ ՔՈՆՍԹԱՆ նուագախումբը։*

*Կը խնդրուի Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր մասնաճիւղերէն ներկայ գտնուիլ սոյն երեկոյթին, քաջալերելու համար այս ձեռնարկը։*

---



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

**ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ**

**ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ**

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24
Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

*Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով։ Ղեկավարութեամբ* Տիկին Յասմիկ Քիւթնէրեանի։

*Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով։*

*Մուտք՝ 3 Ն. Ֆ.։*

---

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ, ժամը 8·30ին, Յոյներու սրահը։ Պարտաւոր ներկայութիւն։ Խիստ կարեւոր օրակարգ։*

*ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Արդութեան խումբի ընկերական ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Շատ կարեւոր օրակարգ։*

---

**ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ**

# ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

*ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ*
SALLE DE LA CHIMIE
28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ **ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ**
Կը բանախօսէ **ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ**

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը։*

**ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵՐՐԵԱԿԸ**
*(Հայկական ժողովրդական երգեր)*
Պ. Մկրտիչ Պօղոսեան (*թենոր*)
Օր. Ա. Գարօյեան (*արտասան.*) Պ. Արա Գրիգորեան (*արտ.*)
Օր. Օֆիկ Քոմբաջեան (*դաշնակ*)
Ցայտնի ջութակահար
GERARD JARRY
(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)
Դաշնակով կ'ընկերանայ
Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON
*Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը։*
Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.

---

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՍԷՆ ԺԻՒԼԻԷՆԷՆ (Արտէշ) Տէր եւ Տիկին Պիւլպիւլեան իրենց զաւկին, զինուորութենէ վերադարձին առթիւ կը նուիրեն տասը Ն. Ֆ. Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին, տասը Ն. Ֆ. Կապ. Խաչի Վալանսի մասնաճիւղին։ (Ստանալ Ս. Զօխախլեանէն)։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Իր պաշտելի մայրիկին, Տիկին Աղաւնի Սալեանի մահուան առթիւ, Պրիւսէլէն Օրիորդ Նուարդ Սալեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Հայ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին եւ յիսուն Ն. Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Երիցուհի Աղդէ Փայլակեան եւ զաւակները, Պ. Մովսէս Փայլակեան եւ զաւակները (Պէյրութ), կը ծանուցանեն թէ այս Կիրակի, Փարիզի Սուրբ Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ՝

ՏԷՐ ԱԴԴԷ ՔՀՆՅ. ՓԱՅԼԱԿԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ։

×

Մարսէյլէն՝ Բաբելեան, Վարժապետեան, Գըլըճեան, Սամաթեալըեան, Հազարապետեան եւ ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ՝ այս Կիրակի ժամը 10ին, Փրատոյի Մայր Եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, զաւկին, փեսին, աներձակին, քրոջորդւոյն ողբացեալ՝

ԲԻՒԶԱՆԴ ԲԱԲԵԼԵԱՆԻ

ղառնակսկիծ մահուան քառասունքին առթիւ։

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Բարգէն Սիւնի խումբին։

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, ՓԵՐԿՈԼԱՑԻ սրահը (Ռոն — Փուէն)։

Կը մասնակցի՝ ԱՆՏՐԷ ՔՈՆՍԹԱՆ նուագախումբը։

Կը խնդրուի Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր մասնաճիւղերէն ներկայ գտնուիլ սոյն երեկոյթին, քաջալերելու համար այս ձեռնարկը։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
ՄԱՅԻՍ 14ԻՆ

ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ

**Անդաստան**

ԳՐԱԿԱՆ — ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ
ԵՐԵԿՈՅԹ — ԳԻՆԵՋՕՆ
Իր տասնամեայ հրատարակութեան առթիւ
ՄԵԾԱՐԱՆՔ

ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆԻ

Որ ներկայ կ'ըլլայ եւ խօսք կ'առնէ
Ներկայ կ'ըլլան նաեւ
ԳԱՐԶՈՒ, ԼԻՒՔ — ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ,
ՎԱՀԷ ՔԱՋԱ, ԺԱՆՍԷՄ, ԻՎ ԹԷՍԻԷ

×

Այս Երկուշաբթի, Ապրիլ 10, ժամը 20.30ին

**Hôtel Lutétia**
43, Bd. Raspail

Տեղերը ապահովելու համար դիմել՝
Տպարան Արաքս
PRO. 05-73
Պ. Գ. Ադամեան
TRI. 57-74
Պ. Գ. Համբարձումեան
LIT. 50-80
Մախճերու մասնակցութիւն 8 Ն. Ֆ.։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՆՈՐ ԿԻՐԱԿԻ

ՓԱՐԻԶ.— Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ

Պատարագ ժամը 10ին, ի յիշատակ համաշխարհային առաջին եւ երկրորդ պատերազմներու նահատակներուն։

Կը նախագահէ եւ կը քարոզէ՝
ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Ժամերգութիւն, պատարագ եւ հոգեհանգիստ ժամը 8–11.30։

ՊՕՄՈՆԻ ԵԿԵՂԵՑԻ
Սկիզբ ժամը 8։
Պատարագ 10։
Հոգեհանգիստ 11.45։

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆ
Սկիզբ ժամը 8։
Պատարագ 10։

### ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի ժամը 10.30ին, հանդստեան ձայնաւոր պատարագ, ողբացեալ Արամ Ճինճեանի եւ Մարի Ժամկոչեանի հոգիներուն համար։

Ննջեցեալներուն յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ։

ՄԱՐՍԷՅԼ

Նախաձեռնութեամբ Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան։

ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ 8

Դաշնակահար

**ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մայիս 28ը Վալանսի մէջ կը տօնուի, Շաբաթ՝ Մայիս 27ին։

×

Մարսէյլի Մայր Եկեղեցիի հայերէնի դասընթացքի աշակերտութեան հանդէս-ներկայացումը Ապրիլ 29ին։

### ԱԶԴ

Աղքատախնամի ծերանոցներու վարչ. յանձնաժողովը կը յայտարարէ որ մօտ ատենէն տրամադրելի նոր անկողիններ պիտի ունենայ Մոնմորանսիի, Սէն Ռաֆայէլի (վերապահուած միմիայն հայ գաղթականներու) եւ Անտիյիի հաստատութեանց մէջ։

Առ այդ, կը յանձնարարուի բոլոր անոնց որոնք կը փափաքին այս ծերանոցներուն մէջ պատսպարուիլ, այժմէն հարկ եղած ձեւակերպութիւնները լրացնելու համար, դիմել՝ Աղքատախնամի գրասենեակը, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9)։ (ԿՆԻՔ)

ԴԵՐԱՍԱՆ ԹՐԱԳՕՇ
Կը ներկայացնէ —
ՎԱՐԴԱՆԱՆՑ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Մասնակցութեամբ կարող ուժերու եւ Տէսինի Ազգ. վարժարանի երկսեռ աշակերտութեան։

ՏԷՍԻՆ.— Այս Շաբաթ երեկոյ, ժամը 9ին, Հ. Յ. Դ. սրահին մէջ։

Ս. ԷԹԻԷՆ.— Այս Կիրակի երեկոյ նոյն ժամուն, հովանաւորութեամբ Ս. Էթիէնի Ազգ. Միութեան։



## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի

### 40ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կը տօնուի այս Կիրակի, ժամը 15ին, Համօ Օհանջանեան ակումբը, ընկերահամակրական խնջոյքով, նախաձեռնութեամբ Անի կոմիտէին։

Կը նախագահէ՝ ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ
Կը խօսի՝ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Գեղարուեստական կոկիկ բաժին, ճոխ պիւֆէ, այլազան ուտելիքներով եւ խըմիչքներով։

Մուտքը ազատ է։

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷՌ — ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24
Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով։ Ղեկավարութեամբ Տիկին Ցամիկ Քիւթնէրեանի։

Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով։

Մուտք՝ 3 Ն. Ֆ.։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ, ժամը 8.30ին, Յոյներու սրահը։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Խիստ կարեւոր օրակարգ։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Արղութեան խումբի ընկերական ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Շատ կարեւոր օրակարգ։

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։ Շատ կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր Եւ. Թ. կոմիտէի վարչութիւնը ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ. Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ
ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ
SALLE DE LA CHIMIE
28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ
Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը։

ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵՐՐԵԱԿԸ
(Հայկական ժողովրդական երգեր)
Պ. Մկրտիչ Պօղոսեան (թենոր)
Օր. Ա. Գաբոյեան (արտասան.) Պ. Արա Գրիգորեան (արտ.)
Օր. Օֆիկ Քոմրաջեան (դաշնակ)

Ջութակահար
GERARD JARRY
(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)
Դաշնակով կ'ընկերանայ
Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը։

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.








## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի կողմէ, այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ:

Կը խօսի՝ ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ

Նիւթ՝ Դաշնակցութիւնը եւ մեր ներկայ իրականութիւնը :

Կը հրաւիրուին ընկերները :

### ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՍԷՆԹ ԷԹԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սեբուհեդի Բարգէն Սիւնի խումբին :

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, ՓԵՐԿՈԼԱՑԻ սրահը (Ռօն - Փուէն):

Կը մասնակցի՝ ԱՆՏՐԷ ՔՈՆՍԹԱՆ նուագախումբը :

Կը խնդրուի Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր մասնաճիւղերէն ներկայ գտնուիլ նոյն երեկոյթին, քաջալերելու համար այս ձեռնարկը :

ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՐՈՒԵՍՏԻ

## Անդաստան

ԳՐԱԿԱՆ - ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ - ԳԻՆԵՁՕՆ

Իր տասնամեայ հրատարակութեան առթիւ

ՄԵԾԱՐԱՆՔ

**ՈՒԻԼԻԸՄ ՍԱՐՈՅԵԱՆԻ**

Որ ներկայ կ'ըլլայ եւ խօսք կ'առնէ

Ներկայ կ'ըլլան նաեւ

ԳԱՐԶՈՒ, ԼԻՒՔ - ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ, ՎԱՀԷ ՔԱՉԱ, ԺԱՆՍԷՄ, ԻՎ ԹԷՍԻՒԷ

×

Այս Երկուշաբթի, Ապրիլ 10, ժամը 20·30ին

**Hôtel Lutétia**

43, Bd. Raspail

Տեղերը ապահովելու համար դիմել՝

Տպարան Արաքս

PRO. 05-73

Պ. Գ. Ադամեան

TRI. 57-74

Պ. Գ. Համբարձումեան

LIT. 50-80

Ծախքերու մասնակցութիւն 8 Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Լիոնէն Տէր եւ Տիկին Յակոբ Վարժապետեան հրապարակաւ կը փութան յայտնել իրենց խորին շնորհակալութիւնները, Լիոնի քահանայ հայրերուն, Ազգ. Միութեան Կեդր. վարչութեան, Եկեղեցաշէն եւ Տիկնանց Միութեանց, Աղքատախնամ մարմնի, Դպրաց Դասու, Նոր Սերունդի, Զ. Ռ. Մ.ի ներկայացուցիչներուն, Հայ Կարմիր Խաչի Օգն. Մարմնի, Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղերուն, Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէին, Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէին, Վալանսի հոգեւոր հովուութեան Տէսինի Կրօն. ընկերակցութեան եկեղեցական վարչութեան եւ իրենց հայրենակիցներուն ու անհատ բարեկամներուն, որոնք՝ այցելութեամբ, հեռախօսով, նամակով ցաւակցեցան իրենց սիրեցեալ փեսին՝

ԲԻՒԶԱՆԴ ԲԱԲԵԼԵԱՆԻ

ղառնակսկիծ աղետահար մահուան առթիւ: Հոգեհանգիստը կը կատարուի այս Կիրակի առաւօտ Մարսէյլի Մայր - Եկեղեցւոյ մէջ, ժամը 10ին:

## ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՊՐԻԼ 23ԻՆ

Նախաձեռնութեամբ՝

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ (ԶՈՄ)

### ԺԻՐԱՅՐ ՄԱԶԼՄԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Տէր եւ Տիկին Մելքոն Պետրոսեան իրենց հօր՝ Ժիրայր Մազլմեանի մահուան երրորդ տարեդարձին առթիւ յիսուն Ն. Ֆ. կը նուիրեն Փարիզահայ Տիկնանց Միութեան Որբերու Օգն. Մարմնին: (Ստացանք «Յառաջ»էն):

### ՄԱՐՍԷՅԼ

Նախաձեռնութեամբ Մուրատ Ռափայէլեան Նախկին Աշակերտաց Միութեան :

ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ՝ ԱՊՐԻԼ 8

Դաշնակահար

**ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ**

կուտայ բացառիկ նուագահանդէս մը Սփլանտիտի սրահներուն մէջ :

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի

40ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կը տօնուի այս Կիրակի, ժամը 15ին, Համօ Օհանջանեան ակումբը, ընկերահամակրական խնճոյքով, նախաձեռնութեամբ Անի կոմիտէին:

Կը նախագահէ՝ ընկ. Ս. ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Կը խօսի՝ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Գեղարուեստական կոկիկ բաժին, ճոխ պիւֆէ, այլազան ուտելիքներով եւ խըմիչքներով :

Մուտքը ազատ է :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Երանդիկ Նիկողոսեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Լիոնի եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՆԻԿՈՂՈՍԵԱՆԻ

մահուան երրորդ տարեդարձին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տրակինեանէն Տիկին Հաճեան յիսնական Ն. Ֆ. կը նուիրէ Կարմիր Խաչին, Կապոյտ Խաչին, Մշակոյթի Տան եւ Աղքատախնամին : (Ստանալ «Յառաջ»էն):

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. Արղութեան խումբի ընկերական ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ :

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր Ենթակոմիտէի վարչութիւնը ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ՄԱՅԻՍ 14ԻՆ

ՇՐՋԱՆԱՅԻՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ ԻՐ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՎ ՄԵԾ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԿԸ ՏՕՆԷ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

ԿԻՐԱԿԻ ԱՊՐԻԼ 9ԻՆ, ԺԱՄԸ 15ԻՆ

SALLE DE LA CHIMIE

28 bis, Rue Saint-Dominique

Կը նախագահէ ՏԻԿԻՆ Հ. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

Կը բանախօսէ ՏԻԿԻՆ ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Փարիզի սիրուած եւ գնահատուած լաւագոյն ուժերը:

**ԱՓՐԻԿԵԱՆԻ ԵՐՐԵԱԿԸ**

(Հայկական ժողովրդական երգեր)

Պ. Մկրտիչ Պօղոսեան (թենոր)

Օր. Ա. Գարոյեան (սոպրանօ.) Պ. Արա Գրիգորեան (պար.)

Օր. Օփիկ Թոմբաջեան (դաշնակ)

Ցայտնի ջութակահար

GERARD JARRY

(Premier Prix du Concours Marguerite Long–Jacques Thibaud 1954)

Դաշնակով կ'ընկերանայ

Mme FRANÇOISE LE GONIDES-MAURON

Պիտի նուագէ Ա. Խաչատուրեանի, Գ. Մ. Ալէմշահի եւ այլ հեղինակներու գործերը:

Մուտք՝ 5 եւ 3 Ն. Ֆ.












## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի կողմէ, այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ:*

*Կը խօսի՝ ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ*

*Նիւթ՝* Դաշնակցութիւնը եւ մեր ներկայ իրականութիւնը:

*Կը հրաւիրուին ընկերները:*

## ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՏՕՆԸ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՊՐԻԼ 23ԻՆ

*Նախաձեռնութեամբ՝*

*ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ (ԶՈՄ)*

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷՌ – ՊՕԻԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24

Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

*Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով: Ղեկավարութեամբ* Տիկին Ցասմիկ Քիւրքճեանի:

*Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:*

*Նուագախումբ՝ ՌՕԲԵՐԹՕ ՍԵԹՕ:*

*Մուտք՝* 3 Ն. Ֆ.:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ*

*ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ*

*ՄԱՅԻՍ 14ԻՆ*

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ
## ԼՈՒՍԵՂԷՆ ՇԻՐԻՄՆԵՐ

ԳՐԱԿԱՆ ԴԻՄԱՍՏՈՒԵՐՆԵՐ

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

*Գին* 10 Ն. Ֆ.

*Կը ներկայացուին Ա. Ահարոնեան, Ռուբէն, Լեւոն Շանթ, Ն. Աղբալեան, Յ. Օշական, Շ. Միսաքեան, Թորգոմ Պատրիարք, Բաբգէն Կաթողիկոս, Յակոբ Մալաքեան, Արշակ Զօպանեան, Ե. Տէր-Անդրէասեան, Աւ. Իսահակեան, Գուրգէն Ալէմշահ, Հրանդ Ալեանաք: Պատկերազարդուած 16 նկարներով:*

×

ՄԱՂԱՔԻԱ ԱՐՔ. ՕՐՄԱՆԵԱՆ

## ՄԻՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

ԵՐԱԺՇՏԱՊԵՏ

ՅԱԿՈԲՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ

*Կը ներկայացնէ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

*Վերջին այս երկուքը մէկ հատորով, պատկերազարդ:*

Շքեղ տպագրութիւն 7.50 Ն. Ֆ.

Պարզ տպագրութիւն 5 Ն. Ֆ.

*Ա Զ Դ*

*Աղքատախնամի ծերանոցներու վարչ. յանձնաժողովը կը յայտարարէ որ մօտ ատենէն տրամադրելի նոր անկողիններ պիտի ունենայ Մոնմորանսիի, Սէն Ռաֆայէլի (վերապահուած միմիայն հայ գաղթականներու) եւ Անտիյլի հաստատութեանց մէջ:*

*Ատ այդ, կը յանձնարարուի բոլոր անոնց որոնք կը փափաքին այս ծերանոցներուն մէջ պատսպարուիլ, այժմէն հարկ եղած ձեւակերպութիւնները լրացնելու համար, դիմել՝ Աղքատախնամի գրասենեակը,* 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9):

(ԿՆԻՔ)

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԿԱՐԵՒՈՐ ԱԶԴ

*Անգամ մը եւս կը խնդրենք որ Յառաջի* Շէք – Փօսթալի *Թիւը չօգտագործուի առաքումներու համար որոնք Թերթին չեն պատկանիր:*

Յառաջի Շէք – Փօսթալի *Թիւը՝*

15069 – 82

*վերապահուած է միայն ՅԱՌԱՋԻն (բաժանեգին, ազդ, գործակալութիւն):*

*Առանցմէ զատ միւս գումարները ղրկել միայն* Մանտա – Քարթով:

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մայիս 28ը Վալանսի մէջ կը տօնուի, Շաբաթ՝ Մայիս 27ին:

×

ՄԱՅՐԵՐՈՒ ՓԱՌԱՏՕՆ

ՅՈՒՆԻՍ 11ԻՆ

×

*Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի Նահանգային Միութեան տարեկան խընջոյքը Ապրիլ 30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ:*

*Մանրամասնութիւնները յետագային:*

*ՇՈՒՏՈՎ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ*

## ՀԱՅ - ԲՈՅԺ

*ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

Թիւ 125 –126, հետեւեալ ճոխ բովանդակութեամբ.—

*Մայրական ցաւը* (Խմբ.): *«Ետեւէս հող մի ընէք»* (Լիլի Գոչունեան): *Հաւկիթի մասին* (Տոքթ. Գ. Գալուստեան): *Արեան փոխներարկում* (Զ. Պարթեւ): *Ուշադրութիւն ողնասիւնին* (Տոքթ. Նաւասարդ): *Ծովերու եւ լիճերու ափին վըրայ* (Տոքթ. Գ. Բամպուկճեան): *Ջրկոտեմ* (Յովսէփ Իշխանեան): *Սեւանայ լիճը* (Գ. Սաղաթէլեան): *Թոխ – թոխ կը հազան* (Տոքթ. Շ. Այվազեան): *Միամեայ երախայի մը յուշերը* (Ա.): *Զուկ կերէք* (Տոքթ. Ասֆանազ): *Տղոց խելացութիւնը չափել* (Տոքթ. Աշճեան): *Կենաց երգ* (Գ. Սարեան): *Արուեստական սերնդագործութիւն* (Տոքթ. Պանծալի): *Կլիմայափոխութիւն եւ հոգեփոխութիւն* (Տոքթ. Արշակ Պօղոսեան): *Հովկուլները* (Շ. Նարդունի): *Արուեստ խօսակցութեան* (Ք.): *Դասեր Թունաւորման դէմ:*

*Բաժանորդագրութեան պայմաններ* — *Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք):* *Արտասահման 20 նոր ֆրանք (2000 Ֆ.)* *երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 Ֆր.):*

Ահաւասիկ թերթ մը, որ կոչուած է Տունին Բժիշկը: Մէկ բաժնեգինը տասը այցեգին կ'արժէ:

Ch. Aivazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)



ՍԳԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ
Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ

## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

*Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին:*

Այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ժան տ'Արք սրահին մէջ:

*Կը նախագահէ ընկ. Մ. ԸՆՏՐԻԿԵԱՆ:*

*Կը խօսի ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:*

*Գեղարուեստական պատշաճ բաժին, արտասանութիւն եւ կենդանի պատկեր մը, Ս. Թէհլիրեանի կեանքէ, «...Ինչո՞ւ սպաննեց Թալէաթը»:*

*Սէն Շամոնի եւ շրջակայի հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը, որ մէկուկէս միլիոն զոհերուն վրէժը լուծեց* 1921 *Մարտ 15ին, Պերլինի մէջ:*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Մարսէյլի մէջ, Ապրիլ 11–24ի Սգատօնը տեղի պիտի ունենայ Ապրիլ 22ին, Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 21ին, Սալ Մազոնոյի մէջ, նախաձեռնութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ երեք յարանուանութեանց:*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ. — Հ.Յ.Դ.Նոր Սերունդի Վ. հարոնեան խումբի ընդհ. ժողովը ... Չորեքշաբթի, ժամը 21ին: Պարտաւորիչ է բոլոր անդամներու ներկայութիւնը*

*ԱԼՖՈՐՎԻԼ. — Հ.Յ.Դ. Ս. Միհ... ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիր... բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը ...ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

*ՓԱՐԻԶ. — Հ.Յ.Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Հինգշաբթի իրիկուան ժամը 21ին, սովորական հաւաքատեղին. Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Վիէնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները ... Շաբաթ, ժամը 21ին, Համօ Օհանջան... ակումբը: Շատ կարեւոր օրակարգ.*

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի կողմէ, այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ:

Կը խօսի՝ ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ

Նիւթ՝ Դաշնակցութիւնը եւ մեր ներկայ իրականութիւնը :

Կը հրաւիրուին ընկերները :

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ
## ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24 Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով : Ղեկավարութեամբ Տիկին Ցասմիկ Քիւրքճէրեանի:

Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, նոր պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:

Նուագախումբ՝ ՌՕՊԵՐԹՕ ՍԵԹՕ :

Մուտք՝ 3 Ն. Ֆ.:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Զաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ ժամը 20ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ :

Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ - ՊՈՒՏԱՔԵԱՆ :

Կը հրաւիրուին նաեւ անդամուհիներ եւ համակիրներ :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մարսիլիոյ Աղքատախնամ – Որբախնամ Միութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները:

1) Երկրորդ Թոռնիկով մը (փոքրիկն Հայկ Միրաքեան, ծնած Սէնթ Լըժէէն) բախտաւորուած ըլլալու երջանիկ առիթով, Գ. Յ. Փափազեանէ 50 Ն. Ֆ.:

2) Իր ողբացեալ ամուսնոյն մահուան քառասունքին առթիւ, Այրի Տիկ. Վ. Համբարձումեանէ տասը Ն. Ֆ.:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ
## ԳԷՈՐԳ ԵԱՆՈՂԷԿԵԱՆ

Դաշնակով կ'ընկերանայ ԺԱԳԼԻՆ ՊԷՕՐԼԷ Ուրբաթ, Ապրիլ 21, ժամը 21ին,

SALLE PAUL FARALICO

21, Rue Yves Toudic (Métro République)

ՅԱՅՏԱԳԻՐ — Կոմիտաս, Եանըպէկեան, Սաթեան եւայլն եւայլն:

Տոմսերու համար դիմել Բալուեան գրատունը, ՓՐՕ 25·46 եւ երգահանդէսին օրը՝ մուտքին :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Արշակ Մոսկոֆեան (Թուլոն) իր քրոջ Տիկին Խոսրովուհի Զըլտըրըեանի կսկծալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 50 Ն. Ֆ. կը նուիրէ Ալֆորվիլի եկեղեցւոյ պայծառութեան : Նմանապէս Տիկին Լուսիկ Գամըլըեան Կարպիս Փափազեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի, քսան Ն. Ֆ. կը նուիրէ, Ս. Եկեղեցւոյս պայծառութեան :

### ԱԶԴ

Աղքատախնամի ծերանոցներու վարչ. յանձնաժողովը կը յայտարարէ որ մօտ ատենէն արամադրելի նոր անկողիններ պիտի ունենայ Մոնմորանսիի, Սէն Ռաֆայէլի (վերապահուած միմիայն հայ գաղթականներու) եւ Անթիպի հաստատութեանց մէջ :

Առ այդ, կը յանձնարարուի բոլոր անոնց որոնք կը փափաքին այս ծերանոցներուն մէջ պատսպարուիլ, այժմէն հարկ եղած ձեւակերպութիւնները լրացնելու համար, դիմել՝ Աղքատախնամի գրասենեակը, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9): (ԿՆԻՔ)

### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔՆԵՐ ՉԱՓԱՀԱՍՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ

Ամէն Ուրբաթ ժամը 19էն 22, Տիկին Այվազեան հայերէնի դասեր կուտայ չափահասներուն, Ազգ. Տան մէջ :

## ԾԱԽՈՒԻ Է

Նպարավաճառի խանութ մը, երեսուն տարուան գործառնութեամբ: Կրնայ գործածուիլ նաեւ քոնֆեքսիոնի համար: Խանութին մօտ՝ կը կազմէ յարկաբաժին մը, երեք սենեակ, խոհանոց: Սթրապպուր Սէն–Տընիի շրջանը, հեռաձայնել ՓԱՍԻ 10 – 52:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ
## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ
## ԱՊՐԻԼ 8ԻՆ

Վերջացաւ Յառաջի վերհրատարակութեան 16րդ տարին: Պիտի խնդրէինք մեր բաժանորդներէն որ անյապաղ նորոգեն 1961 – 1962ի իրենց բաժանորդագրութեան շրջանը առանց սպասելու անհատական դիմումներու: Կը խնդրենք նաեւ այն բաժանորդներէն որոնք առկախ հաշիւներ ունին կարգադրել զանոնք առանց ուշացնելու :

Շնորհակալութիւն մեր բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ
### 46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան :

Բարձր հովանաւորութեամբ Կաթողիկոսական պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Պատուոյ նախագահութեամբ Ալֆորվիլի քաղաքապետ՝

ՌԱՈՒԼ ՊԼԷՕԶԻ

Ապրիլ 22, ժամը 21ին, Քաղաքապետարանին սրահը, Ռիւ Վոլթէր, Ալֆորվիլ:

Օրուան պատշաճ յայտագիր :

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ
### ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, հայածէս պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ռատիոկայանէն ; Պատարագիչ՝ Խոմիտաս Վ. Զարըգեան : Քարոզիչ՝ Ներսէս Ծ. Վ. Սեթեան: Նիւթ՝ «Քրիստոսի Յարութիւնը եւ մեր հայրերուն հաւատքը»:

Կարճ ալիք՝ 31·10, 25·35 եւ 19·94 :

Միջին ալիք՝ 196 մ.:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Վիէնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21ին, Համօ Օհանջանեան ակումբը: Շատ կարեւոր օրակարգ:

ՇԱՒԻԼԻ Կրօն. Ընկերակցութեան ընդհ. ժողովը այս Շաբաթ գիշեր ժամը 20·30ին, դպրոցի սրահին մէջ: Օրակարգ՝ ընտրութիւն նոր վարչութեան: Անդամներէն կը խնդրուի ստիպողաբար ներկայ գտնուիլ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի :

ԺԱՆԹԻՅԻԻ Հայկ. դպրոցի Կրթ. մարմինը կը հրաւիրէ բոլոր Թաղեցիները, այս Շաբաթ, ժամը 21ին, Խորհրդակցական ժողովի, հայկական դպրոցի մէջ :

ՓԱՐԻԶԻ ԿԱՊ. ԽԱՉԻ վարչական ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը 3ին, Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ:

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի պատարագ պիտի մատուցուի Շաւիլի եկեղեցիին մէջ։ Յաւարտ պատարագի, մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ապրիլեան նահատակաց յիշատակին:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Լաւ գործաւոր մը տունը աշխատող, կանանց բաճկոնի եւ վերարկուի համար : Լաւ վճարում :

ROSE COUTURE

284, Rue de Vaugirard, Paris (15e)

Métro : Vaugirard



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՍԳԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ
## Ի ՅԻՇԱՏԱԿ ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ
## ՍՈՂՈՄՈՆ ԹԷՀԼԻՐԵԱՆԻ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին :

Այս Շաբաթ, ժամը 20·30ին, ժան տ'Արք սրահին մէջ:

Կը նախագահէ ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ :

Կը խօսի ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :

Գեղարուեստական պատշաճ բաժին, արտասանութիւն եւ կենդանի պատկեր մը, Ս. Թէհլիրեանի կեանքէ, «...Ինչո՞ւ սպաննեց Թալէաթը »:

Սէն Շամոնի եւ շրջակայի հայ հասարակութիւնը կը հրաւիրուի ոգեկոչելու անմահ հերոսին յիշատակը, որ մէկուկէս միլիոն զոհերուն վրէժը լուծեց 1921 Մարտ 15ին, Պերլինի մէջ :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ — Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՓԱՐԻԶ — Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյեան ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՐՍԷԼԻ Հ. Յ. Դ. Վարդան ենթ. ի ժողովը այս Կիրակի, ժամը 15ին, Առնուվիլի ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

## ԱՊՐԻԼ 11 - 24 Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ (ՁՈՄ)

23, ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ

ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ (ՔԱՏԷ)

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ

Կ. ՄԵՀԵԱՆ





## ՆՈՒԷՐ

*Տէր եւ Տիկին Գ. Լոռէնեան իրենց թոռնիկներուն՝ Վարուժան եւ Արուսեակ Լոռէնեանի ծննդեան տասներորդ տարեդարձին առթիւ յիսուն Ն. Ֆ. կը նուիրեն Կապ. Խաչի Կեդր. վարչութեան: (Ստացուած «Յառաջ»էն):*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*ԼԻՈՆ.— Տէր եւ Տիկին Վարդավառ Գամպէրեան իրենց անցուցած ծանր արկածէն ապաքինման եւ տուն վերդարձին առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրեն Յառաջի բարգաւաճման:*

*Այս առթիւ իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն ընկերներու, հայրենակիցներու եւ ծանօթներու, որ հիւանդանոցը իրենց յաճախակի այցելութիւններովը քաջալերեցին եւ մխիթարեցին զիրենք:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

### ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

*Կիրակի, Ապրիլ 23, ժամը 16·30ին ձայնաւոր պատարագ:*

*Կը պատարագէ՝*

*ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊՍ. ԱՄԱՏՈՒՆԻ*

Basilique du Sacré-Cœur de Montmartre

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

**ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ**

Դպրոցական Տարեշրջանի փակման եւ
Բարերարներու Օրը
ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 25
Մանրամասնութիւնները յաջորդով:

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

*Հայ Նախկին Ռազմիկներու Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները, Կիրակի, Ապրիլ 23, ժամը ճիշդ 16ին, իր կեդրոնատեղին, 32, Րիւ տը Թրէվիզ:*

*ՕՐԱԿԱՐԳ.— Նոր վարչութեան անդամներու ընտրութիւն:*

*Զանազան հարցեր:*

*ԿՆԻՔ*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28 »ը կը տօնուի Փարիզի մէջ, 27 Մայիս Շաբաթ գիշեր, Զ. թաղապետարանի սրահներուն մէջ:

×

Մայիս 28ը Վալանսի մէջ կը տօնուի Շաբաթ՝ Մայիս 27ին:

×

*Մարսէյլի մէջ, Ապրիլ 11–24ի Սգատօնը տեղի պիտի ունենայ Ապրիլ 22ին, Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 21ին, Սալ Մազընոյի մէջ, նախաձեռնութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ երեք յարանուանութեանց:*

×

*ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ՄԱՅԻՍ 1ԻՆ*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ

### 46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ* Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան:

*Բարձր Հովանաւորութեամբ Կաթողիկոսական պատուիրակ՝*

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*Պատուոյ նախագահութեամբ Ալֆորվիլի քաղաքապետ՝*

*ՌԱՈՒԼ ՊԼԷՕԶԻ*

Ապրիլ 22, ժամը 21ին, Քաղաքապետարանին սրահը, Րիւ Վոլթէր, Ալֆորվիլ:

*Օրուան պատշաճ յայտագիր:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*ՄԱՐՍԷՅԼ.— Պ. Թագւոր Տիրատուրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փրատոյի Մայր եկեղեցւոյ մէջ, իրենց կնոջ եւ մօր՝*

*ԿԱՐԻՆԷ ՏԻՐԱՏՈՒՐԵԱՆԻ*

(Ծնեալ Գալէնտէրեան)

*մահուան քառասունքին առթիւ:*

*Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:*

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԱՆԻԷՌ – ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ

### ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Ապրիլ 16, ժամը 16էն 24
Անիէռի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

*Հայկական պարեր՝ ՍՕՍԻ պարախումբը իր ամբողջական կազմով: Ղեկավարութեամբ* Տիկին Ցասմիկ Քիւթնէրեանի:

*Երգ, արտասանութիւն, եւրոպական պարեր, ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով:*

*Նուագախումբ՝ ՌՕՊԵՐԹՕ ՍԵԹՕ:*

*Մուտք՝ 3 Ն. Ֆ.:*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԱՊ. ԽԱՉԻ Վիէնի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. անդամական ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Շաբաթ, ժամը 21ին, Համօ Օհանջանեան ակումբը: Շատ կարեւոր օրակարգ:*

*ՇԱՒԻԼԻ Կրօն. Ընկերակցութեան ընդհ. ժողովը այս Շաբաթ գիշեր ժամը 20·30ին, դպրոցի սրահին մէջ: Օրակարգ՝ ընտրութիւն նոր վարչութեան: Անդամներէն կը խնդրուի անպայմանօրէն ներկայ գտնուիլ: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:*

*ԺԱՆԹԻՅԻԻ Հայկ. դպրոցի Կրթ. մարմինը կը հրաւիրէ բոլոր թաղեցիները, այս Շաբաթ, ժամը 21ին, Խորհրդակցական ժողովի, հայկական դպրոցի մէջ:*

*ՓԱՐԻԶԻ ԿԱՊ. ԽԱՉԻ վարչական ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը 3ին, Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան մէջ:*



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

### ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

### ԱՊՐԻԼ 8ԻՆ

*Վերջացաւ Յառաջի վերհրատարակութեան 16րդ տարին: Պիտի խնդրէինք մեր բաժանորդներէն որ անյապաղ նորոգեն* 1961 – 1962ի *իրենց բաժանորդագրութեան շրջանը առանց սպասելու անհատական դիմումներու: Կը խնդրենք նաեւ այն բաժանորդներէն որոնք առկախ հաշիւներ ունին կարգադրել զանոնք առանց ուշացնելու:*

*Շնորհակալութիւն մեր բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն վարչութեան գործը:*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Ապրիլեան Սգատօնը Վիէնի մէջ, Ապրիլ 23ին, նախաձեռնութեամբ՝ Հայ Ազգ. Միութեան եւ մասնակցութեամբ բոլոր հայկական կազմակերպութեանց:*

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:*

*ԱՌՆՈՒՎԻԼ – ՍԱՐՍԷԼԻ Հ. Յ. Դ. Վահան ենթ.ի ժողովը այս Կիրակի, ժամը 15ին, Առնուվիլի ծանօթ հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

*ՄԱՐՍԷՅԼ.— Գօմոնի Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները եւ «Յառաջ» խումբը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Շատ կարեւոր օրակարգ: Բացականները նկատի պիտի առնուին*

## ԱՊՐԻԼ 11 - 24 Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

*ԿԸ ՏՕՆՈՒԻ*

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ (ՋՈՄ)
23, ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ
ՓԸԹԻ ԺՈՒՐՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ (ՔԱՏԷ)

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ

ԿԱ. ՄԵՀԵԱՆ

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հ. Յ. Դ. Քրիստափոր Ենթակոմիտէի ընկերները հետեւեալ գումարները կը նուիրեն Մշակոյթի Տան Սողոմոն Թէհլիրեան սրահին, փոխան ծաղկեպսակի ողբացեալ ընկեր Բիւզանդ Բարսեղեանի մահուան քառասունքին առթիւ։ Վարդան Քուփէլեան երեսուն Ն. Ֆ., Աստուր Քէօսէեան քսան, Պօղոսատար Տիրատուրեան տասը, Արամ Ծերունեան տասը, Գարսամ Ցակոբեան, Ա. Արմաղանեան, Խաչատուր Մխիթարեան, Յովհաննէս Փիսոյեան, Կարապետ Թիւթէլեան, Ոմն հինգական Ն. Ֆ., (գումար 100 Ն. Ֆ.)։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Այրի Տիկին Հայկուհի Թէրզիպաշեանի, Գ. Մելքոն Գօզոսեանի եւ բոլոր պարագաներուն, իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, մեծ հօր ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ կսկծալի մահուան առթիւ։

## ՆՈՒԷՐ

Օր. Արաքսի Գազազեան իր քրոջ աղջկան Վարդուշի 13րդ տարեդարձին առթիւ երեսուն Ն. Ֆ. նուիրած է Հայաստանի թերթին։

### ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ՖԻԼՄԵՐՈՒ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Անիէռ Պուա – Քոլոմպի մէջ

Կազմակերպուած Անիէռ Պուա Քոլոմպի Հայկ. Դպրոցի Կրթ. Մարմնի կողմէ։

Ի նպաստ հայկական դպրոցին։

Առաջին անգամ ըլլալով պիտի ցուցադրուին՝

Փ Լ Ո Ւ Զ Ո Ւ Մ

ինչպէս նաեւ

« 01 – 91 »

Զաւեշտական ֆիլմը։

Այս Երեքշաբթի ժամը 21ին սինէմա Ռէքսի մէջ, 154 Րիւ տէ Պուրկինեօն, Անիէռ, (Պուա Քոլոմպի կայարանին քով)։

Մուտք՝ 2 եւ 3 Ն. Ֆ.։

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

Հայ Նախկին Ռազմիկներու Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները, Կիրակի, Ապրիլ 23, ժամը ճիշդ 16ին, իր կեդրոնատեղին, 32, Րիւ տը Թրէվիզ։

ՕՐԱԿԱՐԳ.— Նոր վարչութեան անդամներու ընտրութիւն։

Զանազան հարցեր։

ԿՆԻՔ

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

Օր. ՇԱՔԷ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ
եւ
PIERRE PILHAN
Ամուսնացած

Փարիզ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի վարչութիւնը կը խնդրէ հանրութենէն նկատի առնել իր հերթական հաւաքոյթներու փոփոխման օրը, որոնք այսուհետեւ տեղի պիտի ունենան Երկուշաբթի իրիկունները, փոխանակ Չորեքշաբթիի։

Վերաբացումը պիտի կատարուի ամսոյս 24ի Երկուշաբթին եւ նիւթը պիտի յայտարարուի յետագային։



# ԱՊՐԻԼ 11-24 Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

## ԿԸ ՏՕՆՈՒԻ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ (ԶՈՄ)

23, ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ

ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ (ՔԱՏԷ)

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ

## Կ. ՄԵՀԵԱՆ

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ

46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան։

Բարձր հովանաւորութեամբ Կաթողիկոսական պատուիրակ՝

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Պատուոյ նախագահութեամբ Ալֆորվիլի քաղաքապետ՝

ՌԱՈՒԼ ՊԼԷՕԶԻ

Ապրիլ 22, ժամը 21ին, Քաղաքապետարանին սրահը, Ռիւ Վոլթէր, Ալֆորվիլ։

Օրուան պատշաճ յայտագիր։

×

Մարսէյլի մէջ, Ապրիլ 11–24ի Սգատօնը տեղի պիտի ունենայ Ապրիլ 22ին, Շաբաթ երեկոյեան ժամը ճիշդ 21ին, Սալ Մազընոյի մէջ, նախաձեռնութեամբ Ազգ. Առաջնորդարանի եւ երեք յարանուանութեանց։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՅԻՇԱՏԱԿԻ

Կիրակի, Ապրիլ 23, ժամը 16·30ին հայնաւոր պատարագ։

Կը պատարագէ՝

ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊՍ. ԱՄԱՏՈՒՆԻ

Basilique du Sacré-Cœur de Montmartre

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

« Մայիս 28 »ը կը տօնուի Փարիզի մէջ, 27 Մայիս Շաբաթ գիշեր, Զ. Բաղդասարեանի սրահներուն մէջ։

×

Մարսէյլի մէջ, Մայիս 28ը կը տօնուի Մայիս 27ին, Շաբաթ գիշեր, «Ալցազար» սրահին մէջ։

×

Մայիս 28ը Վալանսի մէջ կը տօնուի Շաբաթ՝ Մայիս 27ին։

×

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ՄԱՅԻՍ 1ԻՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբին կողմէ

ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ

Կիրակի, Մայիս 7, ժամը 15·30ին

**Alfortville, Salle des Fêtes**

Յայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղինակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առաջին ունկնդրութիւն։

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—
ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ
ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենօր)
ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթօն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Ինքնատիպ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.։
Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով

TRI. 77-22 Poste 62
Օր. Այտա Զաքրէճեանի

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

## ԿՈՉ
### ՀԱՅ ՆԱԽ. ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ
### — ԱՊՐԻԼ 24 —

*Զէնքի ընկերնե՛ր եւ հայրենակիցնե՛ր։*

*Այս անգամուան մեր կոչը արտակարգ հրաւէր մըն է՝ յիշատակի արտակարգ արարողութեան մը համար։*

*Կոչ կ'ընենք ամէն Հայու, որ գայ ու մեզի հետ մասնակցի մեծարանքին զոր պիտի ընծայենք ի յիշատակ մեր այն բոլոր մեռեալներուն, որոնք իրենց կեանքը զոհած են 1914 եւ 1945 աշխարհամարտերուն՝ Ֆրանսայի եւ Արեւելքի ռազմա-դաշտերուն վրայ, որոնք զոհ գացած են 1915ի տարագրութեանց՝ Միջագետքի անապատներուն մէջ։*

*Մեր բոլոր հերոս Մեռեալներու յիշատակը հաւատարմութեամբ պահպանող Հ. Ն. Ռազմիկներու Միութիւնը, Ֆրանսական պատկան իշխանութեանց շնորհումով՝ Յաղթական Կամարին տակ Անծանօթ Զինուորին Բոցը արծարծելու արարողութիւնը պիտի կատարէ Ապրիլ 24-ին՝ Օր մեր ազգային սուգին։*

*Ուստի, այս տարի մեր համախմբումը տեղի կ'ունենայ Երկուշաբթի Ապրիլ 24, կէսօրէ ետք ժամը ճիշդ վեցին, Էթուալի հրապարակը՝ Շան գ'Էլիզէի եւ Ավընիւ Մարսոյի անկիւնը։*

*Դուք որ գիտէք ամէն բանէ առաջ ու վեր պատուել յիշատակը ձեր սիրելիներուն, եկէ՛ք նուիրական մեծարանքը ընծայելու՝ Յաղթական Կամարը փառքի դամբան ըրած Անծանօթ Զինուորին, որ ոչ ոք կրնայ հաւաստել թէ մեր հերոսներէն մէկը չէ։*

Հ. Ն. Ռ. Մ.
(Կենտ.)

---

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ
### ԳԷՈՐԳ ԵԱՆՈՊԷԿԵԱՆ

*Դաշնակով կ'ընկերանայ* ԺԱԳԼԻՆ ՓԷՍՐԼԷ

*Ուրբաթ, Ապրիլ 21, ժամը 21ին,*

SALLE PAUL FARALICO

21, Rue Yves Toudic (Métro République)

*ՅԱՅՏԱԳԻՐ*.— Կոմիտաս, Եանըպէկեան, Սաքեան *եւայլն եւայլն։*

*Տոմսերու համար դիմել Բալուեան գրատունը, ՓՐՕ 25-46 եւ երգահանդէսին օրը՝ մուտքին։*

---

### ԸՆԴՀ. ԺՈՂՈՎ

*Հայ Նախկին Ռազմիկներու Միութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները, Կիրակի, Ապրիլ 23, ժամը ճիշդ 16ին, իր կեդրոնատեղին, 32, Րիւ* տը Թրէվիզ։

*ՕՐԱԿԱՐԳ*.— *Նոր վարչութեան անդամներու ընտրութիւն։*

*Զանազան հարցեր։*

ԿՆԻՖ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
### *ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ*

*Ֆ. Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին արձանագրութիւնները կը սկսին, այս Երկուշաբթի (Ապրիլ 24)։ Դիմել Երկուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շաբաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խաչի գրասենեակը* 17 Րիւ Պլէօ *։ Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկներ՝ 7էն 14 տարեկան, մանչեր՝ 7էն 13 տարեկան։*

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

# ԱՊՐԻԼ 11-24 Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ
## ԿԸ ՏՕՆՈՒԻ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԱՊՐԻԼԵԱՆ ՍԵՐՈՒՆԴԻՆ ԿՈՂՄԷ (ԶՈՄ)

23, ԱՊՐԻԼ, ԿԻՐԱԿԻ ԵՐԵԿՈՅ

ՓԸԹԻ ԺՈՒՌՆԱԼԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ (ՔԱՏԷ)

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ
### Կ. ՄԵՀԵԱՆ

*Օրուան պատշաճ գեղարուեստական բաժնին իրենց մասնակցութիւնը կը բերեն Օրիորդներ* Շաքէ Պէնկեան, Նահապետեան, Գարոյեան, Իռէն Ֆարշեան (Ֆրանսական Ձայն – Պատկերասփիւռի Ա. մրցանակ), *ինչպէս նաեւ ֆրանսական երաժշտական հնգեակ մը։*

### ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ
#### 46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ* Ալփորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ հոգաբարձութեան։

*Բարձր հովանաւորութեամբ Կաթողիկոսական պատուիրակ՝*

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

*Պատուոյ նախագահութեամբ Ալֆորվիլի քաղաքապետ՝*

*ՌԱՈՒԼ ՊԼԷՕԶԻ*

Ապրիլ 22, ժամը 21ին, Քաղաքապետարանին սրահը, Ռիւ Վոլթէր, Ալֆորվիլ։

*Օրուան պատշաճ յայտագիր։*

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց պետերուն եւ նախաձեռնութեամբ Ազգ. Կեդր. վարչութեան։*

*Այս Շաբաթ, ժամը 21ին,* Սալ Մազը-Նօ, 88, Րիւ տ'Օպանեը։

*Կը նախագահէ՝*

*Գ. Վ. ՍԱՀԱԹՃԵԱՆ*

*Կը խօսին*.— ՏԷՐ ԵՂԻՇԷ ՔՀՆՅ. ՓԱՆՈՍԵԱՆ (*Հայ Առաքելական Եկեղեցի*), *ԳԵՐՑ. ՅՈՎՀ. Ծ. Վ. ԶՈՒՀԱՃԵԱՆ (Հայ Կաթողիկէ Եկեղեցի), ՎԵՐ. ՂԱԶԱՐՈՍԵԱՆ (Աւետարանական եկեղեցի) եւ Կ. ՃԱՆԻԿԵԱՆ (Ազգ. Կեդր. վարչութիւն)։*

*Օրուան պատշաճ գեղարուեստական բաժին։*

*Կը հրաւիրուին բոլոր ազգային մարմինները, միութիւնները եւ համայն հայ ժողովուրդը։*

×

### ԼԻՈՆԻ ՄԷՋ

*Կազմակերպուած Լիոնի Ազգ. Միութեան հովանաւորութեամբ եւ երեք յարանուանութեանց պետերու, միահամուռ մասնակցութեամբ Լիոնահայ գաղութին։*

*Այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին,* 6րդ *Թաղապետարանի հանդիսասրահը,* Րիւ տը Սէզ։

*Կը նախագահէ Գ. ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ*

*Խօսք կ'առնեն Ազգ. Միութեան եւ կազմակերպութեանց ներկայացուցիչները։ Առուր պատշաճի խնամեալ գեղարուեստական բաժինով մը։*

*Պիտի ներկայացուի կենդանի պատկեր մը ղեկավարութեամբ Գ. ԹՐԱԳՕՇԻ։*

*Մեներգ եւ արտասանութիւն։*

*ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ*

*Այս Կիրակի, կէսօրէ ետք ժամը* 15.30-*ին,* Րիւ Ժէֆ, Սէն Լուի *սրահին մէջ*

*Նախաձեռնութեամբ Կրընոպլի Հայ Ազգ. Միութեան եւ մասնակցութեամբ բոլոր այն կազմակերպութիւններուն, որոնք իրենց համաձայնութիւնը կու տան*

*Կը նախագահէ Գ. Տ. ՍԹԱՄԳՈՒԼԵԱՆ*

*Խօսք կ'առնեն մասնակցող կազմակերպութիւններու ներկայացուցիչները*

*Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին։*

×

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ
#### ԱՊՐԻԼԵԱՆ ՆԱՀԱՏԱԿԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

*Կիրակի, Ապրիլ 23, ժամը* 16.30*ին ձայնաւոր պատարագ։*

*Կը պատարագէ՝*

*ԳԵՐՊ. ԿԱՐԱՊԵՏ ԵՊՍ. ԱՄԱՏՈՒՆԻ*

Basilique du Sacré-Cœur de Montmartre

×

*ԼԻՈՆԻ ՄԷՋ*

Ֆուրվիէրի Տիրամօր Տաճարին մէջ հայածէս ձայնաւոր պատարագ եւ պաշտօն Ապրիլեան նահատակներու համար։

*Ֆուրվիէրի Տիրամօր բլրանիստ տաճարին մէջ, այս Կիրակի առաւօտ, ժամը ճիշդ 10ին, Կարդինալ ԺԷՐԼԻԷի օժանդակ նին՝ ԼԷԲՐԻՒՑԻ եպիսկոպոսին նախագահութեան տակ, ձայնաւոր պատարագ պիտի մատուցուի եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի մէկուկէս միլիոն հայ նահատակներու եւ վերջին երկու համաշխարհային պատերազմներու ատեն պատուոյ դաշտին վրայ ինկած հայ զինուորներու համար։*

*Լիոնի եւ շրջակայքի Հայութիւնը, իր նահատակներուն եւ հերոսներուն ինկած յիշատակը յարգելու համար, կը հրաւիրուի այս կրկնակ պաշտամունքներուն ներկայ գտնուելու։*

×

*ԼԻՈՆԻ ՄԷՋ*

*Այս Կիրակի Նահատակաց յիշատակին հոգեհանգստեան պատարագ, ժամը 10-ին, կը հրաւիրուի Լիոնի եւ շրջանի հայութիւնը։*

×

*ՄԱՐՈՔԻ ՄԷՋ*

*Հայկական ծէսով հոգեհանգստեան պատարագ ի յիշատակ Ապրիլեան զոհերու։ Այս Կիրակի առաւօտ Քազապլանքայի Ս. ՄԱՐԿՐԻԹ եկեղեցւոյ մէջ, ժամը 11ին։*

## ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ



*ՓՈԹՈՐԻԿԸ (իւղանկար)*

(Նկար եւ քանդակ)

*Հովանաւորութեամբ*

*Ճարտարապետ*

*Ե. ԻՒԹԻՒՃԵԱՆԻ*

Ապրիլ 21էն–Մայիս 1

*Ազգ. Տան մեծ սրահին մէջ,* 32, Րիւ Թրէզիվ,

*ժամը* 15էն 19.30

*Մուտքը ազատ է*



Ապրիլ 29, Շաբաթ ժամը 21ին

SALLE GAVEAU, 45, Rue La Boëtie, PARIS

## ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ
### ԿԸ ՂԵԿԱՎԱՐԷ ԻՐ ԳՈՐԾԵՐԸ ։

ORCHESTRE SYMPHONIQUE DES CONCERTS CHOUTEAU

*SYMPHONIE No 13*
*(Première audition mondiale)*

PRIERE DE ST. GREGOIRE, extrait de l'œuvre « Etchmiadzine »

*SYMPHONIE No 8 « ARJUNA »*

ՏՈՄՍԵՐԸ ԱՊԱՀՈՎԵԼ ԴԻՄԵԼՈՎ ՀԵՏԵՒԵԱԼ ՀԱՍՑԷՆԵՐՈՒՆ

DURAND : 4, Place de la Madeleine SALLE GAVEAU : 45, Rue La Boëtie

ուիչքին նախօրեակին։ «Տէյլի Ուորքըր» Մոսկուայի թղթակիցը կ'ըսէ (ըստ «Իւմանիթէի» տուած թարգմանութեան) թէ Խորհ. Միութիւնը առաջին մարդը ղրկած է անջրպետ եւ ողջ երկիր բերած։ Կ'ըսուի թէ այս առաջին մարդը փորձի օդաչու մըն է եւ զաւակը Խորհ. Միութեան գլխաւոր ճարտարագէտներէն մէկուն։ Կ'ըսուի նաեւ թէ անջրպետային այդ թըռիչքին հետեւանքներէն կը տառապի եւ խորհրդային յայտնի գիտնականներ մընայուն հսկողութեան տակ կը պահեն։

Ամէն պարագայի մէջ, այս բոլորը կը հաստատեն թէ ամէն բան յստակ չէ։

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խնջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ — աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը։ (Մայիս 11)։

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները։

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Լիոնի Հայ Աւետարանական եկեղեցւոյ նախաձեռնութեամբ եւ քրիստոնեայ զանազան միացեալ ուժերով պիտի ներկայացուի՝

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ — ՏՐԴԱՏ ԹԱԳԱՒՈՐ

թատերգութիւնը Լիոնի Զ. Թաղապետարանի սրահը, Մայիս 13ին, ժամը 20·45ին։ Նոյն ներկայացումը՝ Վիէնի մէջ Մայիս 14ին, ժամը 15ին, Սէրքըլ Կաթոլիք սրահը։

## ՖՐԱՆՍ. ԲԱՆԱԿԻ ՀԱՅ ՆԱԽ. ՌԱԶՄԻԿՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Անծանօթ Զինուորին բոցը կ'արծարծէ

ԵՐԿՈՒՇԱԲԹԻ

— ԱՊՐԻԼ 24 —

Ի յիշատակ երկու աշխարհամարտերու հայ զոհերուն եւ Ապրիլեան Նահատակներուն։

Զէնքի ընկերնե՛ր եւ հայրենակիցնե՛ր։ Եկէք անխտիր մասնակցելու այդ օրը՝ կրկնակ նուիրական յիշատակի թափօրին։

Հաւաքոյթ.— Երկուշաբթի Ապրիլ 24, կէսօրէ ետք ժամը ճիշդ 6ին, Էթուալ՝ Շան զ'Էլիզէի եւ Ավընիւ Մարսոյի անկիւնը։

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Երկուշաբթի ժամը 21ին՝ բացառաբար Ռէժանի վերնայարկը։

Կը խօսի՝ նկարիչ Գ. ԺԻՐԱՅՐ ՓԱԼԱՄՈՒՏԵԱՆ։ Նիւթն է «Ի՞նչ է Ազգը»։

Կը խնդրուի նկատի առնել օրուան եւ տեղւոյն փոփոխութիւնը։

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս չորսին։ Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները. ժամը 10–12։

## ՆՈՒԷՐ

Այրի Տիկին Ա. Գարոնվարդեան եւ աղջիկը Օր. Մառի Գարոնվարդեան Մալաքոֆէն իրենց ողբ. ամուսնոյն եւ հօր Գրիգոր Գարոնվարդեանի եւ հօրեղբօր Նշան Գաղտալեանի յիշատակին կը նըւիրեն քսան Ն. Ֆ. Ս. Թէհլիրեան սրահին, քսան Ն. Ֆ. Սեվրի Ս. Մուրատեան վարժարանին եւ քսան Ն. Ֆ. «Հայբոյժ»ին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ

### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին արձանագրութիւնները կը սկսին, այս Երկուշաբթի (Ապրիլ 24)։ Դիմել Երկուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շաբաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խաչի գրասենեակը 17 Րիւ Պլէօ։ Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկներ՝ 7էն 14 տարեկան, մանչեր՝ 7էն 13 տարեկան։

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Հ. Յ. Դ.

ԱՆԻՒԵՌ.— Հ. Ե. Դ. Շաւարշ Միսաքեան խումբի դասախօսական ժողովը Չորեքշաբթի, ժամը 21ին, Րիւ տը պէ Լըմիոյի սովորական սրահը։

Դասախօս՝ Ընկ. ՍԱՀԱԿ ՑՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ։

## Հ. Ե. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԱՀԱՐՈՆԵԱՆ ԽՈՒՄԲ

Տիկին ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՍՏԱՔԵ[illegible] կը շարունակէ իր դասախօսութիւնները։

Նիւթ. Հայոց պատմութիւն։

Այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Ակումբին տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ Բ. [illegible] Նոր Սերնդականները եւ համակիրները հրաւիրուած են։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Նոր Սերունդի թատերական Գարնիկ խումբը կը ներկայացնէ ՄԵՑԱԳ[illegible] ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ, Մայիս 13ին Փօլ Ֆարալիֆ։

Գարնեան խումբի խնջոյքը՝ Րիւ Գ. Ապրիլ 29ին։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ ՄԱՅԻՍ 1ԻՆ







Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

Տէր Գարգին քհնյ. Մէրճանեան, Ժիրայր Մէրճանեան, Տիկին Մարիամ Թարագճեան, Տիրամայր — Երիցուհի Ա. Մէրճանեան, Տէր եւ Տիկին Վահագն Մէրճանեան (Պէյրութ), Տէր եւ Տիկին Հ. Օհանեան եւ զաւակը (Վալանս), Տէր եւ Տիկին Զ. Վայլօեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Բաբգէն Զաքրեան, Այրի Տիկին Տ. Կիւլեան, Տէր եւ Տիկին Գեղամ Զաքրեան, զաւակները, Տէր եւ Տիկին Եդուարդ Զաքրեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Փօլ Բուալիւս, Նաեւ՝ Ղազարեան, Զօրիկեան, Տ. Անքիւեան եւ Ա. Օհանեան (Պոլիս) ընտանիքները, անհուն վշտով կը ծանուցանեն մահը իրենց կողակցին, մօր, զաւկին, հարսին, զարմուհիին եւ ազգականին՝

ԵՐԻՑՈՒՀԻ ՎԵՀԱՆՈՅՇ ՄԷՐՃԱՆԵԱՆԻ
(Ծնեալ Թարաճեան)

վաղահաս եւ անակնկալ մահը, 48 տարեկանին, որ տեղի ունեցաւ վիրաբուժական գործողութեան մը հետեւանքով։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Հինգշաբթի ժամը 16ին, Ալֆորվիլի Ս. Պօղոս — Պետրոս եկեղեցւոյ մէջ, եւ մարմինը պիտի ամփոփուի տեղւոյն գերեզմանատան մէջ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս ընդունիլ իբր այդ։

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին արձանագրութիւնները կը սկսին, այս Երկուշաբթի (Ապրիլ 24)։ Դիմել Երկուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շաբաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խաչի դրասենեակը 17 Րիւ Պլէօ։ Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկներ՝ 7էն 14 տարեկան, մանչեր՝ 7էն 13 տարեկան։

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Գանեէօ — Քաշանի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Պ. Մալխասեանէ տասը Ն. Ֆ. իրենց փեսին Գարօյր Դանիէլեանի մահուան տարելիցին, իսկ տասը Ն. Ֆ. ալ ընկերուհի Մալխասեանի արկածէ մը ազատուելու առթիւ։

ՀԱՅԿ. ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Մարսէյլի Կապոյտ Խաչի վարչութեան կողմէ։

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէգիր-Ճեանի։

Ի նպաստ Միութեան բարենպատակ ձեռնարկներուն։

Մայիս 20, Շաբաթ ժամը 21ին, Սալ Մազընոյի սրահին մէջ, 88 Րիւ տ'Օպանը, Մարսէյլ։

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱ
(Ազգ. յուզիչ օփերէթ, 4 արար)

Պարերու եւ խնճոյքի տեսարաններուն իր մասնակցութիւնը կը բերէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախումբը։

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ թառիստ ԳԱՐՈՅՐ։

Դաշնակահար Գ. ԱԲԻԿ։

Սրինգ՝ Գ. ՇԻՇՄԱՆԵԱՆ։

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ — ՀՌՈՄ
ԵՒ
ՇՐՋԱԿԱՅՔԸ

Շաբաթ մը ծովի կեանք՝ Հանր. Սան Մարինոյի մօտ, Ադրիականի աննման աւազին վրայ, ծովեզերեայ նորաշէն եւ հանգստաւէտ պանդոկի մը մէջ։

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս, 6
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս, 31

Արձանագրութեանց եւ մանրամասնութեանց համար դիմել.—

Ն. ՄԱՑԻՍԵԱՆ
45, Rue de Trévise, PARIS (9e)
Tél. : TAI. 49-40
(Գաւիթին մէջ)
Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Avenue Béranger
ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O)

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ
ԿԸ ՏՕՆՈՒԻ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
ՄԱՅԻՍ 14ԻՆ

## ԽՆՋՈՅՔ
## Surprise-Party

Կազմակերպուած Նոր Սերունդի Թատերական ՊԱՐՈՆԵԱՆ խումբի կողմէ։

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20էն 24.
ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ
17, Rue Bleue, Paris (9e)
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

Երգ, պար, արտասանութիւն, անակնկալներ։

**Bar** **Buffet**

## ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ
Ապրիլեան Եղեռնի տարեդարձին առթիւ
ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, դպրոցի սրահը։

Հովանաւորութեամբ Շաւիլի եկեղեցւոյ վարչութեան։

Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Արդութեան» խումբին, Կապ. Խաչի եւ Նոր Սերունդի մասնաճիւղերուն։

Կը նախագահէ Կ. ՄԵՀԵԱՆ

Կը խօսի ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ — ՊՈՒՏԱՔԵԱՆ։

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժին։

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս չորսին։ Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները. ժամը 10-12։

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ
ԱՀԱՐՈՆԵԱՆ ԽՈՒՄԲ

Տիկին ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ—ՊՈՒՏԱՔԵԱՆ կը շարունակէ իր դասախօսութեանց շարքը։

Նիւթ. Հայոց պատմութիւն։

Այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Ազգային տան մէջ, 32 Րիւ տը Թրէվիզ։ Բոլոր Նոր Սերնդականները եւ համակիրները հրաւիրուած են։

**5%**
**1961**
**EMPRUNT**
**GAZ**
**DE FRANCE**



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

Օր. ՍՈՆԻԱ ՊԱՅՐԱՄԵԱՆ (Վէրսայլ)
Պ. ՍԱՐԳԻՍ ՔԻԻԹՆԷՐԵԱՆ (Գանեէօ)
Նշանուած

Փարիզ, 2 Ապրիլ 1961

## ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը նկատի կ'առնէ միայն կանխիկ վճարուած ազդերը։ Բոլոր ազդերու համար հարկ է նախապէս պայմանագրուիլ վարչութեան հետ։ Սակագրութիւն չկրող եւ վարչութեան հետ համաձայնութիւն չունեցող կազմակերպութեանց ազդերը նկատի չեն առնուիր։

Թիւրիմացութեանց եւ սխալներու առաջքն առնելու համար, վարչութիւնը որոշած է հետամայնով ազդ չընդունիլ։ Սոփպողական բացառիկ պարագաներու՝ Յառաջի խմբագրութիւնը պատասխանատու չէ եթէ վրիպակներ պատահին։

«ՅԱՌԱՋ»Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Հ. Յ. Դ.

ԱՆԻԷՌ.— Հ. Յ. Դ. Շաւարշ Միսաքեան խումբի դասախօսական ժողովը Չորեքշաբթի, ժամը 21ին, Րիւ պէ Լըմիռի սովորական սրահը։

Դասախօս՝ Ընկ. ՍԱՀԱԿ ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Գանեէօ — Քաշանի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները ... Ուրբաթ, ժամը 20.30ին, ընկերուհի Հանըջէրեանի բնակարանը, 9 Րիւ ... Փրէ։ Խիստ կարեւոր օրակարգ։ ... խնդրուի ճշդապահ ըլլալ։

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանասոր խումբի պարահանդէսի ցերեկոյթը Մայիս 7ին։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ
## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ
Երգչախումբին կողմէ

## ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ
Կիրակի, Մայիս 7, ժամը 15.30ին
**Alfortville, Salle des Fêtes**

Ցայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղինակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առ աջին ունկնդրութիւն։

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—
ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ
ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենոր)
ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթոն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
Իսքընտիւ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.։
Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով
TRI. 77-22 Poste 62
Օր. Այտա Զաքրէեանին

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

Ապրիլ 29, Շաբաթ ժամը 21ին
SALLE GAVEAU, 45, Rue La Boëtie, PARIS

## ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ
ԿԸ ՂԵԿԱՎԱՐԷ ԻՐ ԳՈՐԾԵՐԸ։

ORCHESTRE SYMPHONIQUE DES CONCERTS CHOUTEAU

*SYMPHONIE No 13*
*(Première audition mondiale)*

PRIERE DE ST. GREGOIRE, extrait de l'œuvre « Etchmiadzine »

*SYMPHONIE No 8 « ARJUNA »*

ՏՈՄՍԵՐԸ ԱՊԱՀՈՎԵԼ ԴԻՄԵԼՈՎ ՀԵՏԵՒԵԱԼ ՀԱՍՑԷՆԵՐՈՒՆ

DURAND : 4, Place de la Madeleine     SALLE GAVEAU : 45, Rue La Boëtie



### ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեր. Նահանգ. Մուրատ Ռէս.ի խըն-ջոյքը այս Կիրակի Մշակոյթի Տան Թէհ-լիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթ-րօ Քատէ, ժամը 15էն մինչեւ 23:

Նախագահութեամբ բժիշկ Ա. ՊՕ-ՂՈՍԵԱՆի:

Գեղարուեստական խնամուած բաժին եւ զանազան անակնկալներ: Իրենց սի-րայօժար մասնակցութիւնը կը բերեն տիկին Սրապեան Նարգուհի (Հալէ-պէն), Օր. Լոյսվարդ Թոփալեան, Պ. Գրիգորեան, Սերոբեան:

Պար՝ Օր. Թարոնի կողմէ, Ասլանեան եւ ուրիշներ:

Պիւֆէ.— Տունէն պատրաստուած խը-նամուած խմորեղէններ:

Մուտքը ազատ է:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Տ. Կ. Խաչի Գաննէօ-Քաչանի մաս-նաճիւղը խոր կսկիծով կը սգայ իր վե-թերան ընկերուհի Մառի Գարակէօզեանի ցաւոն կորուստը եւ վշտակիր ցաւակցու-թիւններ կը յայտնէ իր ամուսնոյն Պ. Սեդրակ Գարակէօզեանի, իր զաւկինՍա-րօ Գարակէօզեանի, իր քրոջ Տէր եւ Տի-կին Կ. Նիկողոսեանի, ինչպէս նաեւ իր բոլոր պարագաներուն:

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները իր Կրթ. ձեռնարկ-ներուն համար.— Պ. Նուրհան Փափազ-եանէ քսան Ն. Ֆ., ողբացեալ Լուսինէ Մէրամէթճեանի հոգեհանգստեան առ-թիւ: Պ. Խաչատուր Ֆէրմանեանէ տասը Ն. Ֆ. ողբացեալ Եդուարդ Գալէնտէր-եանի մահուան առթիւ փոխան ծաղկե-պսակի:

### ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ԼՈՒՐՏ

Նախագահութեամբ Թեմիս Առաջնորդ, Գերպ. Կարապետ Եպիսկ. Ամատունիի, 30 Յուլիսէն 4 Օգոստոս, տեղի պիտի ու-նենայ Ուխտագնացութիւն մը դէպի Լուրտ:

Արձանագրութիւնները կը տեւեն մին-չեւ Մայիս 31:

Մանրամասնութիւններու համար դիմել Հայ Կաթողիկէ Ս. Խաչի Ժողովրդապե-տութեան: Առաւօտեան ժամը 10էն 12.

10 bis, Rue Thouin, PARIS

Tél.: ODE. 02.12

### ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ

Ապրիլեան Եղեռնի տարեդարձին առթիւ

ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, դպրո-ցի սրահը:

Հովանաւորութեամբ Շաւիլի եկեղեց-ւոյ վարչութեան:

Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Ար-ղութեան» խումբին, Կապ. Խաչի եւ Նոր Սեբաստիոյ մասնաճիւղերուն:

Կը նախագահէ Կ. ՄԵՀԵԱՆ

Կը խօսի ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ:

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժին, կը մասնակցին Օր. Աստղիկ Քէօ-սէեան (երգ) եւ Օր. Գաբոյեան (արտա-սանութիւն):

### ԱՊՐԻԼ 11-24 Ի ՍԳԱՏՕՆԸ

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ, հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց պետերուն:

Այս Շաբաթ, ժամը 21ին Սալ տէ Ֆէ-թի մէջ:

Կը նախագահէ Պ. Յ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ:

Կը խօսի Պ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ (Լիոնէն):

Երեք համայնքներու կողմէ:

Խօսք կ'առնէ ՏԷՐ ՆԱՐԵԿ ՔՀՆՅ. ՎԱՐԴԱՆԵԱՆ:

եւ Հայ Ազգ. Միութեան կողմէ՝

Պ. Լ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ (Ֆրանսերէն)

Օրուան պատշաճ գեղարուեստական խնամուած բաժին:

×

### ԳՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ապրիլեան Եղեռնի 46րդ տարեդարձը Գորտոյի մէջ:

Նախաձեռնութեամբ Գորտոյի Հ. Յ. Դ. Մուրատ խումբին:

Այս Կիրակի ժամը 15.30ին, Ֆուայէի սրահը, Սընօն:

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Պէյրութէն Պ. Եդուարդ Վարժեան ծը-նեալ Սէփսեան, հօրը անունը Մկրտիչ, մօրը անունը Քնար, ծնեալ Սաատէթ-եան, կը փնտռէ իր հօրեղբօրորդին Պ. Զօհրապ Սէփսեանը, հօր անուն Արմե-նակ, մօր անուն Գեղեցիկ Սէփսեան-Գալուստեան, արհեստով դերձակ, ծնած է Էսկիշէհիր ու կը կարծուի թէ Փարիզի շրջաններուն մէջ կը բնակի: Զինքը ճանչցողներէն կը խնդրուի տեղեակ պա-հել եկեղեցւոյ դիւանը:

### ԽՆՋՈՅՔ

**Surprise-Party**

Կազմակերպուած Նոր Սեբաստիոյ Թա-տերական ԳԱՐՈՆԵԱՆ խումբի կողմէ:

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20էն 24.

ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ

17, Rue Bleue, Paris (9e)

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

Երգ, պար, արտասանութիւն, անա-կնկալներ:

**Bar** **Buffet**

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ

ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի օդափոխութեան կա-յանին արձանագրութիւնները կը սկսին, այս Երկուշաբթի (Ապրիլ 24): Դիմել Եր-կուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շա-բաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խա-չի գրասենեակը 17 Րիւ Պլէօ: Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկ-ներ՝ 7էն 14 տարեկան, մանչեր՝ 7էն 13 տարեկան:

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Գաննէօ-Քաչանի Կրթ. Մարմինը կազմակերպած է դպրոցական տարեվեր-ջի հանդէսը, խնամուած յայտագրով, Յունիս 4 Կիրակի օր:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Հինգշաբթի, սովո-րական հաւաքատեղին: Կարեւոր օրա-կարգ:

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբի մէջ: Կարեւոր օրակարգ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆ. Կ. ԽԱՉԻ Գաննէօ-Քաչանի մաս-նաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս Ուրբաթ, ժամը 20.30ին, ընկերուհի Հանջէրեանի բնակարանը, 9 Րիւ տէ Փրէ: Խիստ կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի Տիկնանց Օժանդակ յանձնախումբը կազմակերպած է դասախօսութիւն մը հայ երկսեռ երի-տասարդութեան համար:

Այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին

Հ. Բ. Ը. Միութեան սրահին մէջ

11, Square Alboni, Paris (16e)

Պիտի դասախօսէ Պ. ԱՐՏԱՇԷՍ ԳԸՊ-ԲԷԹԵԱՆ:

Նիւթ ունենալով՝ «Հայ Թատրոնը»:

Սիրով կը հրաւիրուի հասարակութիւ-նը:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

ՍԻՓԱՆ-ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբին կողմէ

ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ

Կիրակի, Մայիս 7, ժամը 15.30ին

**Alfortville, Salle des Fêtes**

Յայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղի-նակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առ աջին ունկնդրութիւն:

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—

ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ

ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենոր)

ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթոն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

, Իմպրովիզ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.:

Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով

TRI. 77-22 Poste 62

Օր. Այտա Զաքրէճեանի

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

ՄԱՅԻՍ 4, ԺԱՄԸ 20ԻՆ

ՍՕՖԻԸՆ ՍՐԱՀ

## ՄԻՒՆԻԽ

## ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ

Կը ղեկավարէ իր գործերը.—

Համանուագ թիւ 8 «Արեւուն»

Համանուագ թիւ 6 «Արշալոյս»

Տոմսերու համար դիմել.— Քոնցերթօ Սէ-Տուպլուէ Վինտըրշթայն

2 Սէնթ-Աննա հրապարակ

Տէր եւ Տիկին Թոռնիկ Թէրզեան, Վահան Թէրզեան եւ իրենց զաւակները, Այրի Տիկին Զարուհի Փամպուքճեան, Տէր եւ Տիկին Միհրան Ասրբեան, Փամպուքճեան, Խրիմեան, Տիկին Յասմիկ Միւրաթէ՝ համդերձ ընտանեօք, խոր կսկիծով կը ծանուցանեն մահը իրենց մօր՝ քրոջ եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՎԱՐՍԵՆԻԿ ԹԷՐԶԵԱՆ
(Ծնեալ Ասրբեան, Կարնեցի)

որ տեղի ունեցաւ իր բնակարանը՝ Ապրիլ 26ին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, այսօր Շաբաթ (Ապրիլ 29), ժամը 10.30ին։

Մարմինը պիտի ամփոփուի Թոմէնվիլի գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

## ԱՊՐԻԼ 11-24Ի ՍԳԱՏՕՆԸ
### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Կազմակերպուած Վալանսի Հայ Ազգ. Միութեան կողմէ, հովանաւորութեամբ երեք յարանուանութեանց պետերուն։

Այս Շաբաթ, ժամը 21ին Սալ տէ Ֆէթի մէջ։

Կը նախագահէ Գ. Յ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ։
Կը խօսի Գ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ (Լիոնէն)։
Երեք համայնքներու կողմէ։
Խօսք կ'առնէ ՏԷՐ ՆԱՐԵԿ ՔՀՆՅ. ՎԱՐԴԱՆԵԱՆ։
եւ Հայ Ազգ. Միութեան կողմէ՝
Գ. Լ. ՄԱՏԹԷՈՍԵԱՆ (ֆրանսերէն)
Օրուան պատշաճ գեղարուեստական յայտագիր բաժին։

×

### ԳՈՐՏՈՅԻ ՄԷՋ

Ապրիլեան Եղեռնի 46րդ տարեդարձը Գորտոյի մէջ։

Նախաձեռնութեամբ Գորտոյի Հ. Յ. Դ. Մուրատ խումբին։

Այս Կիրակի ժամը 15.30ին, Ֆուայէի սրահը, Սընօն։

Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Վասպուրականի հերոսամարտի տարեդարձը կը տօնուի Տէսինի մէջ, Մայիս 21ին։

## ՅԻՇԱՏԱԿԻ ՀԱՆԴԷՍ

Ապրիլեան Եղեռնի տարեդարձին առթիւ
ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, դպրոցի սրահը։

Հովանաւորութեամբ Շաւիլի եկեղեցւոյ վարչութեան։

Մասնակցութեամբ Հ. Յ. Դ. «Արցութեան» խումբին, Կապ. Խաչի եւ Նոր Սերունդի մասնաճիւղերուն։

Կը նախագահէ Կ. ՄԵՀԵԱՆ
Կը խօսի ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷՔԵԱՆ - ԳՈՒՏԱՔԵԱՆ։

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժին, կը մասնակցին Օր. Աստղիկ Քէօսէեան (երգ) եւ Օր. Գարոյեան (արտասանութիւն)։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Սիւզան Փարթամեան, Այրի Տիկին Սիրանուշ Փարթամեան, Տէր եւ Տիկին Յակոբ Կէօնճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յակոբ Գապիկեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Փարթամեան, Գապիկեան, Բաղլաճեան, Մարգարեան, Աղիրեան, Գզրիկեան, Կէօքճեան, բոլոր ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ այս Կիրակի ժամը 10ին, Սէն Լու Կրան Փէնի Ս. Գէորգ եկեղեցւոյ մէջ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ ամուսնոյն, զաւկին, եղբօր, աներձակին եւ քրոջ որդւոյն ողբացեալ՝

ՎԱՀԷ ՓԱՐԹԱՄԵԱՆԻ

դառնակսկիծ մահուան քառասունքին առթիւ։

×

Տէր եւ Տիկին Գարգէն Սերոբեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց զաւկին՝ եւ եղբօր Վարդգէսի, ծնողքին, քրոջ եւ հօրաքրոջ յիշատակին, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։ Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները։ Այս առթիւ Տէր եւ Տիկին Սերոբեան կը նուիրեն քսան Ն. Ֆ. Խրիմեան դպրոցին, քսան եկեղեցւոյ Կրթ. Մարմնին եւ տասը Ն. Ֆ. Սողոմոն Թէհլիրեան սրահին եւ տասը Ն. Ֆ. «Յառաջ»ին։ (Ստանալ «Յառաջ»էն)։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԽՆՋՈՅՔ
### Surprise-Party

Կազմակերպուած Նոր Սերունդի թատերական ԳԱՐՈՆԵԱՆ խումբի կողմէ։

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20էն 24,
ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ ՄԷՋ
17, Rue Bleue, Paris (9e)
ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

Երգ, պար, արտասանութիւն, անակնկալներ։

**Bar** **Buffet**

## ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբ. Նաւհանգ. Մուրատ Ռուբ.ի խրնջոյքը այս Կիրակի Մշակոյթի Տան Թէհլիրեան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ, ժամը 15էն մինչեւ 23։

Նախագահութեամբ բժիշկ Ա. Գօղոսեանի։

Գեղարուեստական խնամուած բաժին եւ զանազան անակնկալներ։ Իրենց սիրայօժար մասնակցութիւնը կը բերեն տիկին Սրապեան Նարդուհի (Հալէպէն), Օր. Լոյսվարդ Թոփալեան, Գ. Գրիգորեան, Սերոբեան։

Պար՝ Օր. Թարօնի կողմէ, Ասլանեան եւ ուրիշներ։

Պիւֆէ.— Տունէն պատրաստուած խնամուած խմորեղէններ։

Մուտքը ազատ է։

## ԾԱԽՈՒ Է

Ժամագործութեան խանութ մը, վաճառաշահ թաղի մէջ՝ ՓԱՐԻԶ (18)։ Ունի փոքր խոհանոց մը, ջուր եւ կազ։

Պայմաններուն համար հեռախօսել՝ ժամը 9էն 19, բացի Շաբաթ օրէն
LAB. 89-29

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 21ին, Հ. Օհանջանեան ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ԳԱՆԷԷՕ - ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Չորեքշաբթի, ժամը 20.30ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

### ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ դէպի Ֆոնթէնպլօ։ Այս Երկուշաբթի Մայիս մէկին։

Հաւաքուիլ Կառ տը Լիոն ժամը ութին մեծ ժամացոյցին առջեւ։



Ապրիլ 29, Շաբաթ ժամը 21ին
SALLE GAVEAU, 45, Rue La Boëtie, PARIS

## ԱԼԱՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ
### ԿԸ ՂԵԿԱՎԱՐԷ ԻՐ ԳՈՐԾԵՐԸ։

ORCHESTRE SYMPHONIQUE DES CONCERTS CHOUTEAU

*SYMPHONIE No 13*
(*Première audition mondiale*)

PRIERE DE ST. GREGOIRE, extrait de l'œuvre « Etchmiadzine »

*SYMPHONIE No 8 « ARJUNA »*

ՏՈՄՍԵՐԸ ԱՊԱՀՈՎԵԼ ԴԻՄԵԼՈՎ ՀԵՏԵՒԵԱԼ ՀԱՍՑԷՆԵՐՈՒՆ
DURAND : 4, Place de la Madeleine SALLE GAVEAU : 45, Rue La Boëtie.
Զեղչեալ գինով տոմսեր տրամադրելի են Յառաջի խմբագրութեան մօտ։

## ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ ՏՐԴԱՏ ՆՇԱՆԵԱՆԻ ԳՈՐԾԵՐՈՒՆ



ՓՈԹՈՐԻԿԸ (իւղանկար)

(Նկար եւ Քանդակ)

Հովանաւորութեամբ
Ճարտարապետ
Ե. ԻՒԹԻՒՃԵԱՆԻ

Ապրիլ 21էն–Մայիս 1

Ազգ. Տան մեծ սրահին մէջ, 32, Րիւ Թրէզիվ,

ժամը 15էն 19.30

Մուտքը ազատ է

ԱՆԻԹԱ ՍԱՐԳՍԵԱՆ
ՌԸՆԷ ԺԻՒԼԻԱՆ
Ամուսնացած
*Մարսէյլ, 28 Ապրիլ 1961*

## ՆՈՒԷՐՆԵՐ

*Գ. Միհրան Փափազեանի թաղման առթիւ հետեւեալ նուէրները եղած են փոխան ծաղկեպսակի Սէն Ժերոմի դըպրոցին. — Պար Թագա Դ. Անթուան 10 Ն. Ֆ., Պար Թինէլ Գ. Ժան 10, Յովհաննէս Ժամկոչեան հինգ, Աբրահամ Մանկասարեան հինգ Ն. Ֆ.:*

*Այս առթիւ Թաղ. Խորհուրդը իր ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալին ընտանիքին:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

*Կը փնտռուի Գարեգին Սարիբէկեան, հօր անունը՝ Յովհաննէս: Ծննդավայրը՝ Զակաապիսկի Կրայ քաղաքը, Աշխաբատ: Ծննդեան թուականն է 1925:*

*Ռուսաստանի Օրիոլ քաղաքին մէջ, Գերմանացիներու կողմէ բռնի կերպով կ'ուղարկուի Գերմանիա, 1942ի Ապրիլին, պարտադիր աշխատանքի: Աշխատանքի վայրն էր Պրեսլաուի գաւառներէն Շփանսպերկ:*

*1943ի Օգոստոսին կ'անհետանայ աշխատանքի վայրէն եւ մինչեւ այսօր անհետ կը մնայ:*

*Երկրորդ աշխարհամարտի լրումէն ետք, գինք տեսած են Ֆրանսայի մէջ: Կ'ենթադրուի որ փոխած ըլլայ իր անունը:*

*Լուր ունեցողներէն կը խնդրուի անմիջապէս տեղեակ պահել հայրը, — Երեւանի գաւառի Սեւքար գիւղէն Յովհաննէս Սարիբէկեան:*

*Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի դիմել «Յառաջ»:*

*Ճիշդ տեղեկութիւն տուողը, փնտռուող Գարեգին Յովհաննէսի Սարիբէկեանի առաջին նամակէն յետոյ կը ստանայ կարեւոր նուէր մը:*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Որբեւրու Օգն. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ֆաքիրեանէ քսան Ն. Ֆ. Տիկին Խօսրովուհի Զըլտըրըեանի մահուան առթիւ:*



## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Մարսէյլի Համախառը. Միութեան մասնաճիւղի վարչութիւնը խորին ցաւակցութիւնները կը յայտնէ տարաբախտ Տիկին Ժողէֆին Խաչատուրեանի (ծնեալ Թորիկեան) մահուան առթիւ իր ամուսնոյն Գ. Անդրանիկ Խաչատուրեանի, Տէր եւ Տիկին Մարտիրոս Թորիկեանի, Տէր եւ Տիկին Մկրտիչ Թորիկեանի, նաեւ ընտանեկան բոլոր պարագաներուն:*

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ
*Վասպուրականի հերոսամարտի տարեդարձը կը տօնուի Տէսինի մէջ, Մայիս 21ին:*

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

—o—

ԳԱՆԵԼՕ – ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Ռ...ծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի հրաւիրէ իր ընկերները այս Չորեքշաբթի ժամը 20.30ին, ծանօթ հաւաքատեղին. Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ. — Հ. Յ. Դ. Ռուբէն Ռւ... ութեան ժողովը Մայս 5ին, Հայ Մ... կոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ:












